# «ՍԱՍՆԱ ԾՌԵՐԻ» ԱՐՁԱԳԱՆՔՆԵՐԸ «ՇԱՐԱՖ-ՆԱՄԵՈՒՄ»

Բանասիր. գիտ. դոկտոր Ս. Բ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ, պատմ. գիտ. դոկտոր Հ. Մ. ԲԱՐԹԻԿՅԱՆ

*Հայ հին վիպական բանահյուսության մեջ մի քանի տարբերակներով առկա է երկու եղբայրների վիպական զրույցը, որի հնագույն տարբերակը գրանցված է Աստվածաշնչում. Ասորեստանի Սենեքերիմ թագավորի որդիները՝ Սարասար և Ադրամելեք, սպանում են իրենց հորը և փախչում գալիս են Արարադի երկիրը[1]: Այս դեպքը պատմական իրողություն է, ստույգ ժամանակագրված, որ հանդիպում է հնագույն գրավոր աղբյուրներում մի քանի անգամ: Այսպես. ըստ «Բաբելոնյան ժամանակագրության» «Թեբետ ամսի 20-րդ օրը (այսինքն՝ մ. թ. ա. 681 թ. նոյեմբեր-դեկտեմբերին, իսկ ըստ Ն. Ադոնցի՝ հունվարին[2]) Սինախերիբին՝ Ասորեստանի թագավորին, խռովության ժամանակ սպանեց նրա որդին»[3]: Սինախերիբին հաջորդած նրա մյուս որդու՝ Ասարխադոնի արձանագրությունները գալիս են լրացնելու պատմական հիշյալ տեղեկությունը: Ըստ այդմ՝ Ասարխադոնի հայրասպան եղբայրները «լսելով իմ (Ասարխադոնի— Ս. Հ., Հ. Բ.) արշավի մոտենալու մասին, թողեցին իրենց հավաքած զորքերը և փախան հայտնի չէ, թե ուր»[4]: Պարտություն կրելով Ասարխադոնից՝ մարդասպան եղբայրները փախչում են Շուպրիա[5]:*

*Հայկական ավանդությամբ, որ մեջ է բերում Մովսես Խորենացին, Հայաստան ապաստանած եղբայրներից Սանասարին (Սարասար) «մեր քաջ նախնի Սկայորդին»՝ Պարույրը, բնակեցնում է Ասորեստանի սահմաններին մոտ, Հայաստանի հարավ-արևմտյան մասում: Սանասարի սերունդն աճելով ու բազմանալով լցնում է Սիմ լեռը (Սասուն): Սանասարից են, ըստ Խորենացու, գոյանում Աղձնյաց աշխարհի բդեշխները: Իսկ եղբայրը (ըստ Խորենացու՝ Արդամոզան) բնակվում է նույն Սիմ լեռան հարավ-արևելյան կողմում, և նրանից սերում են Արծրունի և Գնունի նախարարական տները[6]:*

*Ըստ Ա. Լաստիվերտցու ավանդության համաձայն Սանասունքը (Սասուն) ծագել է նրա հիմնադիր նախնու՝ Սանասարի անունից: Թովմա Արծրունու*

---

1 *Տե՛ս Աստվածաշունչ, Թագ. չորրորդ, ԺԹ, 36—37:*

2 *Ն. Ադոնց, Հայաստանի պատմություն, Երևան, 1972, էջ 131:*

3 D. Luckenbill, Ancient Records of Assyria and Babylonia. II, Chicago, 1927, *էջ 505:* И. М. Дьяконов, Ассиро-вавилонские источники об Урарту. ВДИ, 1951, №№ *2, 3, 4, էջ 63. Նաև՝ «Հայ ժողովրդի պատմություն», հատ. Ա, Երևան, 1971, էջ 426:*

4 *Նույն տեղում:*

5 *«Հայ ժողովրդի պատմություն», հատ. Ա, էջ 426: Ուսումնասիրողները Ադրամելեք անվան տակ տեսնում են Սինախերիբի որդիներից մեկին՝ Արադ-Նինլիլին, իսկ Սարեցերի (Սարասար) անվան տակ՝ մ. թ. ա. 681 թ. զորավար, էպոնիմ՝ Նաբուշարուսուրին (տե՛ս «Հայ ժողովրդի պատմություն», հատ. Ա, էջ 426: Ն. Ադոնց, Հայաստանի պատմություն, էջ 130—131:*

6 *Մովսես Խորենացի, Պատմութիւն Հայոց, Ա, ա. ԻԴ:*

վկայությամբ էլ՝ սասունցիք «Սանասնայք զինքեանս անուանեն», այսինքն՝ դարձյալ կապված Սանասարի անվան հետ[7]։

Այս պատմությունն իր էական գծերով մտել է «Սասնա ծռեր» վեպի մեջ և կազմել նրա առաջին ճյուղի բուն բովանդակությունը, հարկավ, վիպա-առասպելական բազմաթիվ նոր միջադեպերով ու մոտիվներով հարստացած[8]։

Երկրորդ զրույցն ավանդված է Մովսես Խորենացու և Սեբեոսի պատմություններում[9]։ Մամիկ և Կոնակ եղբայրները (ըստ Խորենացու՝ Մամ-Կոն) ճենական արքայական (կամ՝ նշանավոր) տոհմից, գժտվելով ապստամբում են Ճենաց թագավորից, պարտվելով ապաստանում են պարսից Արտավան թագավորի մոտ։ Երբ Ճենաց թագավորը Արտավանից պահանջում է ապստամբներին, վերջինս եղբայրներին ուղարկում է իր ազգական հայոց թագավորի մոտ։ Հայոց թագավորից ապստամբում է Սլկունյաց նահապետը։ Թագավորի խորհրդով եղբայրներն սպանում են ապստամբ նահապետին, և թագավորը նրանց է նվիրում Սլկունիների կալվածքները և նրանց կարգում նախարար։ Մամիկը և Կոնակը հաստատվում են Տարոնում և Սիմ լեռան վրա. նրանցից է սերում Մամիկոնյանների նախարարական մեծ տոհմը։

Այս նույն զրույցը մեկ այլ տարբերակով առկա է Հովհան Մամիկոնյանի Տարոնի պատմության մեջ։ Ըստ Հովհան Մամիկոնյանի՝ Դեմետրն ու Գիսանեն եղբայրներ են, ցեղով՝ հնդիկ իշխաններ, որոնք դավադրություն են սարքում Հնդկաստանի թագավորի դեմ։ Հալածվելով արքայական զորքերից, նրանք փախչում, ապաստանում են հայոց Վաղարշակ թագավորի մոտ, որը

---

7 Արիստակես Լաստիվերտցի, Պատմություն, թարգմ. Վ. Գևորգյանի, Երևան, 1971, էջ 85։ Թովմա Արծրունի, Պատմութիւն տանն Արծրունեաց, Ս. Պետերբուրգ, 1887, էջ 121։

8 «Սասնա ծռեր» վեպի պատումների մի զգալի մասը, որ պարունակում է առաջին ճյուղը, սկսվում է երկվորյակ եղբայրների հրաշալի կամ սովորական ծննդի, իրենց կռապաշտ կամ մահմեդական թագավոր հոր (երբեմն՝ հայրացուի) հետ ունեցած հակամարտության, վերջինիս սպանության, փախուստի, Հայաստանում ունեցած արկածային թափառումների, Սասունում վերջնական բնակություն հաստատելու և Սասունի տերերի տոհմի հիմնադրման՝ տարբեր կոնֆլիկտներով հարուստ վիպական պատմությամբ։ Վեպի այն պատումները, որոնք ունեն առաջին ճյուղը, իրենց տարբերություններով հանդերձ բոլորն էլ հանգում են հիշյալ սյուժետային սխեմային։ Վեպի մի քանի պատումներում երկվորյակ եղբայրների հայրը կամ հայրացուն Ասորեստանի Սենեքերիմ թագավորն է, կամ պարզապես մի օտար կռապաշտ թագավոր. պատումների զգալի մասում՝ Բաղդադի կռապաշտ կամ մահմեդական խալիֆա, երբեմն էլ Ոստանի քուրդ բեկ. Աչմու թագավորի տղա, Մսրա կռապաշտ թագավորի որդի Փաշա, կռապաշտ Հնդա Մելիք, քրիստոնյա Ուրֆաս իշխան և այլն։ Երկվորյակ եղբայրներից մեկը պատումների ճնշող մեծամասնության մեջ հանդես է գալիս Սանասար անունով, երբեմն՝ Սինամ-Քերիմ կամ Սինամ-Սարիմ։ Երկրորդ եղբայրը հանդես է գալիս Աբամելիք, Ադնամելիք, Մելիք, երբեմն՝ Արգըլ-Քերիմ և Սենե-Քարիմ, իսկ ավելի հաճախ՝ Բաղդասար անուններով։ Եղբայրների հայրը կամ հայրացուն միշտ օտար թագավոր է (կամ իշխան), իսկ մայրը՝ հաճախ հայոց քրիստոնյա թագավորի կամ իշխանի դուստր։ Բոլոր դեպքերում Սասունի հիմնադիր եղբայրները սերում են արքայական նշանավոր տոհմերից։ Վեպում եղբայրները լեռնային Սասունն իրենք են հայտնաբերում, բայց բնակվում են ու բնակեցնում որևէ թագավորի կամ իշխանի համաձայնությամբ ու թույլտվությամբ։ Ըստ վեպի՝ Սասուն տեղանունը ծագում է եղբայրների կառուցած բերդի վիթխարիությունից («էս ինչ սասում (մեծ, հսկա) քարեր են», «էս տուն չի՝ սասում է, — ասում է բերդի անվանադիր ծերունին) կամ քարակոփ, սյունածածկ կառուցվածքից («Քար վրր քարին, սուն վրր սան, էղավ Սան-սուն=Սասուն»)։

9 Մովսես Խորենացի, Բ, գլ. ՁԱ։ «Սեբեոսի եպիսկոպոսի Պատմութիւն», Երևան, 1939, գլ. Գ, էջ 12—13։

նրանց է նվիրում Տարոնի երկիրը՝ իշխանությամբ հանդերձ։ Տարոնում նրանք կառուցում են Վիշապ քաղաքը։ Տարիներ անց թագավորն սպանում է երկու եղբայրներին և իշխանությունը հանձնում նրանց երեք զավակներին, որոնք կառուցում են իրենց անուններով կոչվող Կուառ, Մեղտի և Հոռեան ավանները[10]։ Մ. Աբեղյանն այս պատմության մեջ իրավամբ տեսնում է Մամիկ և Կոնակ եղբայրների զրույցի «մի մնացած արձագանք հետին դարերի» և գտնում, որ «Գիսանեայ-Դեմետրի անունով պատմվել է Մամ-Կոնի զրույցը»[11]։

Այսպիսով, հայկական վաղ միջնադարյան աղբյուրների գրավոր տվյալների համաձայն, Սասունի և Տարոնի իշխանական տների ծագման մասին հայ ժողովրդի մեջ պատմվել են երեք ավանդություններ, որոնք, իրենց տարբերություններով հանդերձ, ունեն մեծ ընդհանրություններ։ Վերջիններս հանգում են հետևյալին. օտար աշխարհի (Ասորեստան, Ճենաստան, Հնդկաստան) երկու եղբայր-արքայազներ կամ իշխանազներ ապստամբում են իրենց թագավորից կամ սպանում նրան, հալածվելով փախչում, ապաստանում Հայաստան, հայոց թագավորից ստանում կալվածքներ և դառնում նախարարական նշանավոր տոհմերի հիմնադիրներ։ Այս է այն ընդհանուր սյուժեն, որ ընկած է հայկական այդ զրույցների հիմքում։ Եթե Մամիկ և Կոնակի, Դեմետր և Գիսանեի զրույցները պատմական ստույգ փաստերով չեն վավերականացված և մնում են ժողովրդական ավանդության սահմաններում, ապա Սանասարի և Ադրամելեքի զրույցի սկզբնամասը վավերականացված է ասուրա-բաբելական գրավոր պատմական աղբյուրներով՝ Զրույցի երկրորդ մասը՝ Աղձնիքի, Վասպուրականի, Սասունի տերերի ծագման պատմությունն արդեն արդյունք է տեղական-հայկական ավանդության, որ, ամենայն հավանականությամբ, ունի պատմական խոր արմատներ։ Սանասարի և եղբոր զրույցն այնպես ամուր է հյուսված եղել Սասունի, Վասպուրականի և Տարոնի հայ ազգաբնակչության վաղնջական պատմությանը, որ ոչ միայն Խորենացու ժամանակից ի վեր, այսինքն V դարից սկսած չի մոռացվել, այլև հարատևել է մինչև X դար, մեկ անգամ ևս հիշատակվել ու նոր տվյալներով լրացվել դարի նշանավոր պատմիչ Թովմա Արծրունու կողմից[12], ապա, որ հատկանշական է, մտել է հայ նոր ժողովրդական վեպի՝ «Սասնա ծռերի» մեջ և գոյատևել ու հասել մեր օրերը։

Մ. Աբեղյանը վաղուց էր դիտել, որ հայ հին «Պարսից պատերազմ» և նոր ժողովրդական «Սասնա ծռեր» վեպերը միանման սկզբնավորություն ունեն. երկուսի սկիզբն էլ «կապված է նոր տոհմերի ծագման հետ»[13]։ Եթե «Պարսից պատերազմն» սկսվում է մի կողմից հայոց Մամիկոնյան սպարապետության, մյուս կողմից՝ պարսից Սասանյան հարստության ծագման պատմությամբ, ապա «Սասնա ծռերն» սկսվում է Սասունի տերերի ծննդով ու Սասունում հաստատվելու պատմությամբ։ Իսկ երբ նկատի ենք առնում, որ Մամիկոնյան սպարապետական տոհմի և Սասունի տերերի ծագման պատմությունները տիպաբանորեն գրեթե նույնանում են, ապա Աբեղյանին հետևելով, կարելի է ասել, որ մեր հին ու նոր վեպերը գրեթե միևնույն սկզբնավորությունն ունեն։

---

10 Տե՛ս Հովհան Մամիկոնյան, Պատմութիւն Տարօնոյ, Երևան, 1941, էջ 107—109։

11 Մ. Աբեղյան, Երկեր, հատ. Ա, 1966, էջ 298—300։

12 Տե՛ս «Թովմայի վարդապետի Արծրունւոյ Պատմութիւն տանն Արծրունեաց», Ս. Պետերբուրգ, 1887, էջ 8, 36, 37, 44, 121.

13 Մ. Աբեղյան, նշվ. աշխ., էջ 192։

Այսպիսով, հայկական հնագույն աղբյուրներով (որոնց հնությունն անցնում է V դարից էլ առաջ, երբ նկատի ենք առնում այդ զրույցների ամենավաղ արձանագրող Մովսես Խորենացու մարաբասյան աղբյուրը) և հայ նոր ժողովրդական վեպով՝ հայ իշխանական տների մասին մի քանի տարբերակներով տարածված ավանդական զրույցները, անկախ իրենց տարբերություններից, աշխարհագրականորեն կապված են հատկապես Սասունի և Տարոնի հետ։ Ուրեմն, այդ զրույցները ոչ միայն տիպարանորեն են նույնական, այլև աշխարհագրորեն, այսինքն՝ նույնատիպ ավանդական զրույցները պատմվել են նույնանուն տեղավայրերի հայ իշխանական տների ծագման վերաբերյալ։ Եթե զրույցի տարբերակների փաստը վկայում է հայկական միջավայրում դրանց հին ու տարածված լինելու մասին, ապա այդ զրույցների աշխարհագրական տեղավայրերն իրենց տիրողներով մեծ և նշանակալից դեր են խաղացել հայ ժողովրդի ծագման ու պատմական զարգացման մեջ։

Ըստ նորագույն պատմագիտական հետազոտությունների[14], հայ ժողովրդի ծագման բնօրրաններից և հայկական պետականության անդրանիկ կազմավորումներից է եղել Վանա ծովից հարավ-արևմուտք ընկած երկրամասը, որ ասուրա-բաբելական ու ուրարտական գրավոր աղբյուրներում կոչվել է Արմե-Շուպրիա կամ Ուրմե։ Վերջինիս մեջ են մտել հին հայկական Տարոնը և Աղձնիքը (որի մեջ և այժմյան Սասունն ու Բիթլիսը)։ Արմե-Շուպրիայում իր անառիկ լեռնային դիրքով, ըստ երևույթին, բացառիկ դեր է կատարել Սասունը հարևան Ասորեստանի և Ուրարտուի նվաճողական ոտնձգությունների դեմ։ Եվ բնավ էլ պատահական չէ, որ Ասորեստանից հալածված եղբայրներն, ըստ ավանդության ու ժողովրդական վեպի, ապաստանում են լեռնային Սասունում, որը, ասուրա-բաբելական և ուրարտական գրավոր աղբյուրներից դատելով, եղել է անառիկ ապաստարան՝ Ասորեստանից և Ուրարտուից քաղաքական ու սոցիալական ճնշումներից հալածված փախստականների համար[15]։

Պատահական չէ նաև Խորենացու այն վկայությունը, որ հայկական հնագույն իշխանական տները՝ Արծրունիները, Գնունիները և Աղձնյաց բդեշխները, որոնք մեծ դեր խաղացին հայ ժողովրդի գալիք պատմության մեջ, առասպելական սերում են Սանասարից և եղբորից։ Նույնքան պատահական չէ նաև այն փաստը, որ եղբայրների զրույցը այլ տարբերակներով փոխանցվել է Տարոնի, հետագայում նաև Սասունի միջնադարյան տերերին՝ Մամիկոնյաններին, որոնք բացառիկ պատմական դեր խաղացին նույն ժամանակաշրջանի հայկական պետականության ամրապնդման և զարգացման ամբողջ ընթացքում։ Եվ այս պատմական մեծ դերով է, անշուշտ, պայմանավորված նաև այն հանգամանքը, որ հայ հին ու նոր վիպական-հերոսական բանահյուսության մեջ («Պարսից պատերազմ», «Տարոնի պատերազմ», «Սասնա ծռեր») Տարոնն ու Սասունը հանդես են գալիս իբրև վիպական անփոփոխ կենտրոններ, որոնց մեջ ապրող ու գործող հերոսների շուրջը հյուսվել են մեր հին ու նոր մեծ վեպերը։

Հայ վիպական բանահյուսության պատմության մեջ տևական ու անփոփոխ դեր խաղացած վիպական այդ կենտրոններում, ուր թե՛ հնում և թե՛ ամ-

14 Տե՛ս «Հայ ժողովրդի պատմություն», հատ. II, էջ 423—434, համապատասխան մատենագրական տվյալներով։

15 Նույն տեղում, էջ 426—429։

բողջ միջնադարի ընթացքում, ինչպես տեսանք, գոյատևել են մեր հարուստ վիպական ավանդույթները, միանգամայն բնական է, որ այդ ավանդույթները հայերից փոխանցվեին իրենց մեջ նոր բնակություն հաստատած այլազգի հարևաններին։

XVI դարի քուրդ նշանավոր պատմիչ Շարաֆ խան Բիթլիսու «Շարաֆ-Նամե» երկը, որ մասնագետների իրավացի կարծիքով քրդերի միջնադարյան պատմության միակ աղբյուրն է, կարևորագույն տվյալներ է պարունակում նաև XVI դարի Իրանի և սահմանակից երկրների պատմության, այդ թվում՝ Հայաստանի ու հայերի վերաբերյալ[16]։

Շարաֆ խան Բիթլիսու երկում, ինչպես միջնադարյան պատմագրական երկերում առհասարակ, բացի գրավոր աղբյուրներից, զգալի չափով օգտագործված է նաև բանավոր ավանդությունը, հատկապես ժողովրդական զրույցներն ու վկայությունները, որոնք, անկասկած, ունեցել են պատմական արժեք։ Ապրելով հայկական շրջաններում և սերտ շփման մեջ մտնելով այդ շրջանների հայկական ազգաբնակչության հետ, Շարաֆ խանը, ինչպես երևում է նրա երկից, տեղյակ էր ոչ միայն հայկական միջավայրում ստեղծված բյուզանդական «Դիգենիս Ակրիտաս» վեպի առանձին դրվագներին[17], այլև Անգեղյա Տորքի մասին զրույցներին[18]։ Դրանցից են նաև Սասունի և Բիթլիսի քուրդ տիրակալների մասին եղած պատմական ավանդությունները, որ իր երկի տարբեր գլուխներում մեջբերում է Շարաֆ խան Բիթլիսին։

«Շարաֆ-Նամեի» երրորդ բաժնի երրորդ գլուխը վերնագրված է. «Սասնո կառավարիչների մասին, որոնք հայտնի են որպես Հազոյի կառավարիչներ»։ Այս գլխում հեղինակը բերում է հետևյալ ավանդությունը. «...Սասնո կառավարիչների ծննդաբանությունը հասնում է Սասանյան տիրակալներին և Բիթլիսի կառավարիչներին. արժանավստահ ավանդության համաձայն նրանք (իմա՝ Սասունի կառավարիչները— Ս. Հ., Հ. Բ.) սերում են երկու եղբայրներից։ Նրանց տոհմի հիմնադիրները եղել են երկու եղբայրներ՝ Իզադդինն ու Զիադդինը, որոնք Հայաստանի մայրաքաղաքից՝ Ախլաթից, եկել են Բիթլիս։ Նրանք Դավիթ անունով ոմն վրացուց գրավել են Սասուն բերդը, որն անցել է Իզադդինին, որի մասին մանրամասն կխոսվի Բիթլիսի կառավարիչների հանգամանքները [նկարագրելիս]։ Քանի որ քրդերի ցեղը Իզադդինին կոչում է Իզազին, ապա և այդ շրջանների կառավարիչները հայտնի են Իզազանի [անունով]։ Ռուժակի (ռուզակի) աշիրաթից նրանք եկել են այդ երկիրը Սասուն բերդը գրավելու ժամանակ»[19]։

Շարաֆ խանը, համաձայն իր խոստման, երկու եղբայրների զրույցին հանգամանորեն անդրադառնում է իր գրքի չորրորդ բաժնի առաջին մասում, ուր նա քրդական ռուզակի ցեղի ծագման ու ռազմական նվաճումների պատ-

---

16 Տե՛ս Ш а р а ф - х а н ибн Ш а м с а д д и н Б и д л и с и, Шараф-Наме, т. I, перевод, предисловие, примечания и приложения Е. И. Васильевой, М., 1967.

17 Տե՛ս Р. М. Б а р т и к я н, Дигенистика в курдском эпосе о Златоруком Хане, ՀՍՍՀ ԳԱ «Լրաբեր» (հաս. գիտ.), 1967, № 1, էջ 47—54։

18 Տե՛ս Հ. Մ. Բ ա ր թ ի կ յ ա ն, Տորք (Տուրք) Անգեղի առասպելի արձագանքները «Շերեֆ-նամեում», «Պատմա-բանասիրական հանդես», 1963, № 2։ Նաև՝ Р. М. Б а р т и к я н, Заметки о византийском эпосе о Дигенисе Акрите, «Византийский Временник», т. XXV, 1964, էջ 158—159։

19 «Шараф-Наме», էջ 247—248։

մությունն է անում։ «Պատմում են,— գրում է Շարաֆ խանը,— [որ] այդ ժամանակ Բիթլիսի և Հազոյի (իմա՝ Սասունի— Մ. Հ., Հ. Բ.) կառավարիչն էր ոմն Դավիթ՝ Վրաստանի փոխարքաներից։ Ռուզակի [ցեղը] նրանից գրավեց Բիթլիսի վիլայեթն ու Հազոն։ Մեկ այլ վարկածով՝ Բիթլիսը նրանք գրավում են քուրդակի ցեղից, իսկ Հազոն՝ վրացիներից։ Ոմանք գտնում են, որ նրանք Բիթլիսը խլեցին զուկիսի ցեղից. [այս] խոսքերի ճշմարտության պատասխանատվությունը կրում է պատմողը։ Մի խոսքով, երբ նրանք դարձան Բիթլիսի և Հազոյի մարզերի տիրակալներ, որոշ ժամանակ անց նա, ով հանձն առավ ռուզակի ցեղի կառավարումը՝ վախճանվեց, և նրանով վերջացավ իր տոհմը։ Այդ ժամանակից ի վեր ռուզակի ցեղից բոլորն իրար դեմ ելան, և ոչ մեկը մյուսին չէր ենթարկվում։ ...Որոշ ժամանակ անց, քանի դեռ նրանց գործերն այդ վիճակում էին, աշիրաթների և ցեղի ավագները խորհրդակցեցին, եկան հետևյալ կարծիքին. «Ախլաթ քաղաքում ապրում են երկու եղբայր՝ Իզադդին և Ձիադդին անուններով, որոնք սերում են Սասանյան արքայատոհմից։ Մենք կբերենք նրանց մեզ մոտ, և ուզածին, ով արժանի և ընդունակ կլինի մեզ կառավարել, կդարձնենք էմիր, և նրանց կհանձնենք իշխանության սանձերը, միայն թե գործերը երկրում կարգավորվեն և բարգավաճեն, իսկ խռովարարները չվարժվեն խառնակչությունների ու խռովությունների կազմակերպման։ Ցեղի ավագանին ու հասարակ մարդիկ, եթե կհամաձայնվեն այդ պայմանին, թող այն կատարեն»։ Ցեղային ավագանուց մի քանի հոգի մեկնեցին Ախլաթ քաղաքը և բոլոր պատիվներով ու արարողություններով արքայազներին բերեցին Բիթլիս։ Մի խումբը Իզադդինին կարգեց Բիթլիսը կառավարելու, մյուսը՝ Ձիադդինին՝ Հազոն»[20]։

Այնուհետև շարունակության մեջ (գրքի չորրորդ բաժնի երկրորդ մասում) հեղինակը դարձյալ անդրադառնում է երկու եղբայրներին և այս անգամ մեջ է բերում վիպական մեկ այլ զրույց. երբ Իզադդինը դառնում է Բիթլիսի կառավարիչ, իսկ Ձիադդինը՝ Հազոյի, որոշ ժամանակ անց Բիթլիսի բնակիչները մեծ սեր ու հարգանք են տածում դեպի Իզադդինը, մինչդեռ եղբայրը՝ Ձիադդինը, նման հարգանք չէր վայելում իր ենթակա սասունցիներից։ Ձիադդինը Հազոյից գալիս է Բիթլիս եղբորը տեսնելու։ Նրան շատ է դուր գալիս Բիթլիսի կլիման. բացի այդ, տեսնելով Բիթլիսի ավագանու և հասարակ մարդկանց առ եղբայրը տածած սերն ու հարգանքը, Ձիադդինը վճռում է տիրանալ Բիթլիսին։ Գաղտնի համաձայնության գալով բերդի կայազորի հետ, Ձիադդինը եղբորից թույլտվություն է խնդրում մեկնելու Հազո։ Իզադդինը ուղեկցում է եղբորը։ Երբ քաղաքից փոքր-ինչ հեռանում են, Ձիադդինը եղբորն ասում է, որ ինքը մատանին մոռացությամբ թողել է բերդում և խնդրում է թույլ տալ իրեն՝ գնալ մատանին բերելու։ Իզադդինը մնում է, զբաղվում որսորդությամբ, իսկ Ձիադդինն արագ վերադառնում է բերդ, փակում դարպասները և լուր ուղարկում եղբորը, թե իրեն շատ է դուր գալիս Բիթլիսի կլիման, ինքը մի քանի օր կմնա Բիթլիսում, իսկ եղբայրը թող մի քանի օրով գնա Հազո։ Իզադդինն իմանալով այդ՝ վերադառնում է բերդ և դարպասները փակ գտնում։ Որքան խնդրում է եղբորը՝ ներս թողնել, Ձիադդինը չի համաձայնվում։ Իզադդինն ստիպված գնում է Հազո, տիրանում Սասունին։ Վերջում Շարաֆ խանն ավելացնում է, որ Հազոյի արդի փոխարքաները, որոնք հայտնի են Ազիզան անունով, սերում

20 Նույն տեղում, էջ 403—404։

են Իզադդինի սերնդից, իսկ Բիթլիսի կառավարիչները սերում են Զիադդինից և կոչվում են Դիադդիններ[21]։

Այսպիսով, Շարաֆ խան Բիթլիսու բերած վկայություններից պարզվում է, որ XVI դարում Բիթլիսի և Սասունի քրդերի միջավայրում իրենց իշխողների ծագման մասին տարածված են եղել տոհմական ավանդական զրույցներ[22], որոնց սեղմ բովանդակությունը հանգում է հետևյալին. Հայաստանի մայրաքաղաք Ախլաթում ապրում են երկու արքայազուն եղբայրներ, որոնք կա՛մ իրենք են գալիս գրավում Սասունն ու դառնում Սասունի և Բիթլիսի տիրակալներ, կա՛մ նրանց ցեղակիցներն են գրավում այդ մարզերն ու եղբայրներին հրավիրում դրանք կառավարելու։ Եղբայրների միջև հակամարտություն է ծագում, և Սասունի տեր Զիադդինը դառնում է Բիթլիսի տիրակալ, որից հետագայում սերում է Դիադդինների իշխանական տոհմը, իսկ Բիթլիսի տեր Իզադդինը դառնում է Սասունի տիրակալ, և նրանից ծագում է Ազիզան կոչված իշխանական տունը։

Այս միևնույն ավանդությունը, եթե ոչ իր մանրամասներով, ապա գեթ իր հիմնական գծերով համընկնում է վաղ միջնադարյան աղբյուրներում և «Սասնա ծռեր» ժողովրդական վեպում մի քանի տարբերակներով առկա վերոբերյալ հայկական ավանդական զրույցներին։ Այսպես.

Թե՛ հայկական և թե՛ քրդական զրույցներում իշխող տոհմերի նախահայրերը օտար ծագումով երկու արքայազն կամ իշխանազն եղբայրներն են (Սանասարն ու Ադրամելեքը (Բաղդասար) Ասորեստանի կամ որևէ օտար կռապաշտ թագավորի, կամ էլ Բաղդադի խալիֆայի զավակներ են, Մամիկը և

21 Նույն տեղում, էջ 407—408։

22 Որ Շարաֆ խանի բերած զրույցներն ունեն բանահյուսական ծագում ու նկարագիր, վկայում են «պատմում են», «ոմանք գտնում են», «արժանավստահ ավանդության համաձայն» և նման այլ հղումները, որ անում է «Շարաֆ-Նամեի» հեղինակը։ Բացի այդ, եղբայրների զրույցի մեջ հիշատակվում է Սասուն բերդի գրավման երկու տարբեր վարկած. մի դեպքում Սասուն բերդը Դավթից անմիջապես գրավում են երկու եղբայրները, մյուս դեպքում՝ ռուզակի ցեղը, որին հաջորդում են եղբայրներին Խլաթից հրավիրելու և Բիթլիսի ու Սասունի կառավարիչներ կարգելու միջադեպերը։ Այս տարբերակների հանգամանքները ես խոսում են զրույցների՝ բանավոր ավանդությունից սերելու մասին։ Միակ գրավոր վկայությունն ըստ Շարաֆ խանի հավաստիացման այն է, որ «որոշ պատմական երկերում բանիցս նշվել է ու հիշատակվել, թե Բիթլիսի կառավարիչների ծննդաբանությունը հասնում է Սասանյան տիրակալներին, և նրանք հայտնի են դարձել իբրև Անուշիրվանի սերունդներ» («Шараф-Наме», էջ 406)։ Որ գրավոր աղբյուրներն էլ կարող էին որևէ տոհմի ծագման մասին գրելիս հենվել բանավոր ավանդության վրա, միանգամայն բնական է և անգամ օրինաչափ. հին և միջնադարյան աղբյուրներում տոհմերի ծագման պատմությունները մեծ մասամբ սերում են բանավոր ավանդությունից։ Բայց խնդիրն այն է, որ Շարաֆ խանն ինքը, մատնանշելով հիշյալ գրավոր վկայությունները, այնքան էլ հավատ չի ընծայում դրանց վավերականությանը։ Ուստի անմիջապես ավելացնում է. «Առավել ճշմարտանման է, որ Անուշիրվանի իշխանության մեջ Փիրուզի որդի Ջամասպը՝ Սասանյան հարստության հինգերորդ [տիրակալը], ղեկավարում էր Հայաստանն ու Շիրվանը Կուբադի փոխարքայության իրավունքով։ Իր մահից հետո նա թողնում է երեք զավակ՝ Նարսին, Սուրհարին և Բահմաթինը։ Այս երրորդ զավակից էլ, որ բնակվում էր Ախլաթում, սերում են Բիթլիսի բուրդ տերերը, հանձին Իզադդին և Զիադդին եղբայրների («Шараф-Наме», էջ 406—407)։ Ուրեմն, Շարաֆ խանի կարծիքով, հիշյալ գրավոր վկայության մեջ ամենաճշմարտանմանը այս վերջին վարկածն է, որին նա որոշ չափով հավատ է ընծայում։ Այսինքն, այդ գրավոր վկայությունները հեղինակի համար նույն արժեքն ունեն, ինչ իր բերած բանավոր զրույցներն ու վկայությունները, և ըստ երևույթին, դրանք ևս հենվել են բանավոր ավանդության վրա։

Կոնակը սերում են Ճննաց, Դեմետրը և Գիսանեն՝ Հնդկաստանի, իսկ Իզադդինն ու Զիադդինը՝ Սասանյան արքայական կամ իշխանական տոհմերից).

Եղբայրները (քրդականում՝ եղբայրների հայրը) օտար երկրներից եկել են Հայաստան և դարձել Հայաստանի իշխաններ (քրդական զրույցով՝ եղբայրների հայր Բահվաթը ունի տիրույթներ և բնակվում է Ախլաթում, որը հիշվում է իբրև Հայաստանի մայրաքաղաք).

Եղբայրները իշխաններ են կարգվում ոչ թե ինքնագլուխ, այլ Հայաստանի թագավորի կամ քրդական ցեղական ավագանու ցանկությամբ.

Եղբայրները թե՛ հայկական, թե՛ քրդական ավանդությամբ իշխողներ են կարգվում Հայաստանի գրեթե նույն վայրերում՝ Աղձնիքում (որ ընդգրկում է նաև Սասունն ու Բիթլիսը) և Տարոնում.

Եղբայրները դառնում են իշխանական տների հիմնադիրներ, որոնցից սերում են իշխանական նշանավոր տոհմեր. Մամիկից և Կոնակից՝ Մամիկոնյանները, Սանասարից՝ Աղձնիքի բդեշխները (ըստ վեպի՝ Սասունի դյուցազնական տերերը—Մհեր, Դավիթ, Մհեր), Ադրամելեքից՝ Արծրունիներն ու Գնունիները, Զիադդինից՝ Դիադդինները, Իզադդինից՝ Ազիզանները։

Երկու կարգի զրույցները, տիպաբանական այս ընդհանրություններով հանդերձ, ունեն մի էական տարբերություն. եթե հայկական ավանդությամբ եղբայրներն ապստամբում են արյունակից թագավորից կամ նրան սպանելով՝ փախչում և ապաստանում են Հայաստանում, ապա քրդական զրույցներում վիպական այդ դրվագն իսպառ բացակայում է: Բացի այդ, քրդական զրույցում մանրամասնորեն խոսվում է եղբայրների միջև ծագած հակամարտության մասին, որը պատճառ է դառնում եղբայրների տիրույթների փոխանակման։ Այս միջադեպը ևս բացակայում է հայկական ավանդության մեջ, թեպետ «Սասնա ծռեր» վեպում եղբայրների միջև քանիցս ծագում են հակամարտություններ, որոնք սերում են բոլորովին այլ ազգագրական իրողություններից, որոնց կանդրադառնանք փոքր-ինչ հետո։ Այստեղ նշենք միայն, որ վեպի մի քանի պատումներում Սանասարը մնում և իշխում է Սասունում, իսկ Բաղդասարը գնում է Բաղդադ և դառնում Բաղդադի թագավոր։

Այս են այն ընդհանրություններն ու տարբերությունները, որ առկա են խնդրո առարկա հայկական և քրդական զրույցներում։

Տիպաբանության առումով ընդհանրությունները լիովին տիպորոշում են երկու կարգի զրույցների սյուժեների նույնությունը. տարբերությունները ավելի մոտիվային մանրամասներ են, որոնք միշտ էլ առկա են նույնակերպ սյուժեների մեջ, որից էլ հենց ծագում են սյուժետային տարբերակները։

Բայց այստեղ կա մի շատ կարևոր հանգամանք, որ աններկբա է դարձնում տվյալ սյուժեների նույնությունը։ Դա պատմա-աշխարհագրական տեղավայրերի նույնությունն է, այն տեղավայրերի, որոնց իշխողների շուրջը հյուսվել են այդ ավանդությունները։ Քրդականում խոսքը Բիթլիսի և Սասունի մասին է, հայկականում՝ մի դեպքում Աղձնիքի, որի մեջ մտնում են Սասունն ու Բիթլիսը, մյուս դեպքում՝ սոսկ Սասունի, ապա և Տարոնի, որի Մամիկոնյան իշխողներին միջնադարում ենթակա էր Սասունը։ Հետևաբար նույն տեղավայրերի շուրջ հյուսված նույնատիպ ավանդությունները բնավ չեն կարող տարբեր կամ պատահական ծագում ունենալ։ Ընդհանրության հիմքերը պետք է փնտրել պատմության մեջ։

Հայագիտության մեջ հավաստված է, որ քրդերը Մրվանյան հարստության ժամանակից սկսած (X—XI դդ.) «Միջագետքից բարձրանում են դեպի Հայաստանի լեռները. բայց մինչև XIII դարի վերջերը Սասունում դեռ քրդեր չեն հիշվում»[23]։ Քրդերը Սասուն են մուտք գործում հավանաբար XIII դարի վերջերին, որովհետև «հաջորդ XIV դարում քրդերն արդեն հաստատված են Սասունի լեռներում»[24], և Սասունը հետզհետե ենթարկվում է նրանց։ Հաջորդ հարյուրամյակում օսմանյան թուրքերի բռնի ջանքերով Արևմտյան Հայաստանում խսպառ բնաջնջվում են ու վերացվում հայ իշխանական տները՝ հայ պետականության վերջին բջիջները, և ժողովուրդն ամբողջապես ընկնում է օտար տիրողների լծի տակ։ XVI դարի կեսերին պորտուգալացի ճանապարհորդներ Ա. Տենրեյրոն և Մ. Աֆոնսոն Արևելքում շրջելիս անցնում են նաև Հայաստանով, լինում են Բիթլիսում, Խլաթում, Սասունում (Հազո)։ Մեստրե Աֆոնսոն հաղորդում է, որ Հազոն (ըստ նրա՝ Հիզուն) գտնվում էր մի քրդի տիրապետության տակ։ Քաղաքի «բնակիչները, թվով 500—600 մարդ, մեծ մասամբ հայեր են և քրիստոնյաներ... նրանք խոսում են նույն լեզվով, ապրում են երկրագործությամբ և անասնապահությամբ, մի քանիսը՝ առևտրով...։ Նրանք, նաև շատերն այդ երկրում, համատեղ ապրում են քրդերի [մահմեդականների] հետ, չնայած լեզուների տարբերությանը»[25]։ Այս վկայությունից պարզվում է, որ արդեն XVI դարում սասունցի հայերը քրդերի հետ ապրել են համատեղ և բարեկամաբար, որ ինքնին ենթադրում է մտավոր շփումների լայն հնարավորություն։

Բայց ենթադրություն անելուց առաջ դառնանք բուն փաստերին։ Շարաֆ խան Բիթլիսին, ինչպես տեսանք, երկիցս վկայում է, որ Իզադդինն ու Ջիադդինը «Դավիթ անունով ոմն վրացուց գրավել են Սասուն բերդը» կամ էլ, ինչպես նա է գրում, «պատմում են՝ այդ ժամանակ Բիթլիսի և Հազոյի կառավարիչն էր ոմն Դավիթ՝ Վրաստանի փոխարքաներից։ Ռուզակի [ցեղը] նրանից գրավեց Բիթլիսի վիլայեթն ու Հազոն»։

---

[23] Ն. Ադոնց, նշվ. աշխ., էջ 362։ Շարաֆ խան Բիթլիսին «Շարաֆ-Նամեում» XVI դարի վերջերին հավաստիացնում է ըստ «արժանավստահ ավանդության», թե իբր արդեն 760 տարի է, ինչ Բիթլիսն իր ենթակա մարզերով (բացառությամբ 110 տարվա) «պատկանում է նրա [իսկական] կառավարիչներին» (այսինքն՝ քրդերին, ավելի որոշակի՝ Իզադդին և Ջիադդին եղբայրների հիմնադրած տոհմին—Ս. Հ., Հ. Բ., տե՛ս «Шараф-Наме», էջ 407)։ Ըստ Շարաֆ խանի՝ ստացվում է, որ Բիթլիսը, նաև Սասունը (որովհետև եղբայրները միաժամանակ են իշխել Բիթլիսին ու Սասունին) արդեն IX դարի առաջին կեսից ենթակա են եղել քրդերին։ Այս հավաստիացումը պատմագիտական քննության չի դիմանում, որովհետև ըստ հայկական, բյուզանդական և արաբական հավաստի աղբյուրների IX դարի կեսերից Տարոնին և Սասունին, արաբական գերիշխանության տակ, տիրում էին Բագրատունիները, որոնց ժամանակ էլ տեղի է ունենում սասունցիների հայտնի ապստամբությունը (850 թ.) Հովնան Բագրատունու գլխավորությամբ ընդդեմ արաբների։ Իսկ XI դարի կեսերից արդեն, սելջուկների արշավանքների ժամանակ, Սասունին իշխում էին դարձյալ Մամիկոնյանները, որոնցից նշանավոր է եղել Թոռնիկը։ Այնուհետև մինչև XIII դարի կեսերը Սասունին փոխնիփոխ իշխում են հայ իշխանները, մինչև որ էյուբյանների բարձրանալով՝ Սասունի անկախությունն ընկնում է (տե՛ս Ն. Ադոնց, նշվ. աշխ., էջ 356—369, համապատասխան պատմագիտական աղբյուրներով)։

[24] Ն. Ադոնց, նշվ. աշխ., էջ 371։

[25] R. Gulbenkian et H. Berberian, La legende de David de Sassoun d'apres deux voyageurs Portugais du XVIe siecle, „Revue des Etudes Armeniennes", t. VIII, 1971, էջ 175—188։

Որ այս երկու տարբեր վկայությունները պատմական ստույգ փաստեր չեն, այլ ավանդական վարկածներ, երևում է, թեկուզ այն բանից, որ Շարաֆ խանը շարունակության մեջ բերում է նույն իրողության մասին ևս երկու այլ վարկած. «Մեկ այլ վարկածով, —գրում է նա,— Բիթլիսը նրանք գավթում են քրդակի ցեղից, իսկ Հազոն՝ վրացիներից։ Ոմանք գտնում են, որ նրանք Բիթլիսը խլեցին զուրխսի ցեղից»։ Եվ հեղինակն անմիջապես ավելացնում է. «[Այս] խոսքերի ճշմարտության պատասխանատվությունը կրում է պատմողը»։ Այսինքն՝ Շարաֆ խանը, մեջ բերելով ավանդական բոլոր վարկածները, իբրև ճշմարիտ պատմիչ, դրանց պատմական վավերականության համար պատասխանատվությունն իր վրա չի վերցնում։

Շարաֆ խանի այս վկայությունների վիպական-ավանդական լինելն է պարզում նրա ավագ ժամանակակից, պորտուգալացի Մ. Աֆոնսոն։ Նկարագրելով Հազոյի բնակիչների որսասիրությունը, նա անմիջապես ավելացնում է. «Այս քաղաքում (իմա՝ Հազոյում— Ս. Հ., Հ. Ր.) է միշտ ապրել հսկա թագավոր Դավիթը (քանզի նա շատ էր սիրում որսորդությունը), որի մասին արդեն խոսեցինք. նա թագավորել է Հայաստանի վրա և կործանել է Ախլաթ [Խլաթ] քաղաքը։ Այստեղ եղել է նաև նրա կինը, նույնպես հսկա, Խանդութ անունով. նա ոտքերին կրել է, ըստ սովորության, ոսկե ապարանջաններ, այնքան խոշոր ու լայն, որ մարդ կարող էր գլխով ու մարմնով դրանց միջով անցնել։ Նա թաղված է քաղաքից մի օրվա ճանապարհի վրա գտնվող բերդում. և բուրգը, որ տիրել է քաղաքին, նա, ով սպանել էր իր հորեղբորը, ինչպես ասացինք, հանել է այդ ապարանջանները, որոնք թաղված են եղել նրա հետ, ինչպես և թագավորի [Դավթի] գերեզմանից մի ոսկե խաչ, որ հայերը «Սուրբ նշան» են կոչել... Այն [խաչը] այնպիսի զորություն է ունեցել, որ երբ նա այդ խաչը կրել է կռվի ժամանակ, ոչ մի բանակ չի կարողացել նրան հաղթել... Այդ Դավիթ թագավորը շատ մեծ և հզոր տիրակալ էր, որը թագավորում էր ոչ միայն բովանդակ Հայաստանի, այլև բազում այլ գավառների վրա, ընդհուպ մինչև Թուրքիա, և Կահիրեի սուլթանը նրան հարկ էր վճարում։ Այդ քաղաքը իր լայնատարած ողջ շրջաններով կոչվում էր Սանսոն [Սասուն]՝ մի կողմից նկատի ունենալով այդ թագավորի (Դավթի— Ս. Հ., Հ. Ր.) ուժն ու զորությունը, որ միշտ այդտեղ է ապրել, մյուս կողմից այն պատճառով, որ մոտիկ մի ամրոցում պահվում են մի նիզակ և վահան, որոնք պատկանել են նրան»։

Խլաթ քաղաքը նկարագրելիս թե՛ Աֆոնսոն և թե՛ Տեներյրոն գրեթե միևնույն բանն են հաստատում։ Աֆոնսոն գրում է, թե Ախլաթը (Խլաթը) եղել է երբեմնի մի մեծ և խիտ բնակեցված քաղաք, որը կործանվել է «Դավիթ անունով մի հայ թագավորի կողմից, որպեսզի թույլ չտա քաղաքը օգտագործվելու թուրքերից, որոնք այն ժամանակ արշավում էին երկիրը նվաճելու»։ Այնուհետև երկու հեղինակն էլ, նկարագրելով քաղաքի բերդն ու կից գմբեթավոր շենքերը, գրում են ըստ ավանդության, թե «դրանք կառուցվել են Սամսոնի [Դավթի] կողմից, որը ծնվել է այդտեղ»[26]։

---

26 Ա. Գյուլբենկյանն ու Հ. Պերպերյանը ճիշտ են նկատել Տեներյրոյի և Աֆոնսոյի վկայությունների ու նկարագրությունների նույնության հասնող նմանությունը։ Եվ նրանք իրավամբ գտնում են, թե, քանի որ Ա. Տեներյրոյի ճամփորդական նոթերի առաջին հրատարակությունը եղել է 1560-ին, այսինքն Մ. Աֆոնսոյի ճամփորդությունից հինգ տարի առաջ, ուստի հավանական է, որ Աֆոնսոն օգտվել է Տեներյրոյի նոթերից հատկապես Հայաստանի քաղաքներից մի քանիսի նկարագրություններում։ Եթե այդ այդպես է, ապա Դավթին տրվող Սամսոն անու-

Ա. Տենրեյրոյի և Մ. Աֆոնսոյի այս մեծարժեք հաղորդումների մեջ Ռ. Գյուլբենկյանն ու Հ. Պերպերյանն իրավամբ տեսնում են «Սասնա ծռեր» վեպի ամենավաղ պատումի հարուստ հիշատակներ։ Բայց տվյալ դեպքում մեզ հետաքրքրում է խնդրի մեկ այլ կողմը. պորտուգալացիների վկայություններից պարզվում է, որ XVI դարի կեսերին Խլաթում և մանավանդ Սասունում լայն տարածում է գտած եղել Դավթի վեպը, այն աստիճանի, որ անգամ հասել է օտարերկրյա ճանապարհորդների ականջներին և արժանացել հատուկ ուշադրության։ Եթե Աֆոնսոյի հայաստանյան թարգմանիչ-ուղեկիցը եղել է հայորդի (Սիմավոն Ֆերնանդես), ապա Տենրեյրոյի ուղեկցի ազգությունը հայտնի չէ։ Ուղեկիցների ազգությունը, հարկավ, նման դեպքերում կարևոր է, քանի որ նրանք են այն բանավոր սկզբնաղբյուրները, որոնց հետ, տեղական լեզուների չիմացության պայմաններում, առաջին հերթին հաղորդակցվում են այլազգիները։ Բայց թարգմանիչ-ուղեկցի ազգությունն այս դեպքում այնքան էլ էական չէ, որովհետև Աֆոնսոյի վկայությամբ՝ Դավթի «սուրբ նշանը» գերեզմանից հանողը եղել է Հազոյի բուրդ իշխանի եղբայրը, իսկ այդ զորավոր խաչի կանթեղին, պատուհասից ազատվելու համար, ձեթ մատուցողը եղել է ինքը՝ Հազոյի տիրակալը։ Բացի այդ, Տենրեյրոն վկայում է (ինչպես և Աֆոնսոն), որ Հազոյի մոտակայքում կա մի շատ հին և փոքր բերդ, որտեղ պահվում են Դավթի նիզակն ու վահանը։ Իսկ բերդը, պարզ է, որ պետք է լիներ քրդերի տրամադրության տակ, որոնք չէին կարող չիմանալ այնտեղ պահվող նիզակի և վահանի տիրոջ պատմությունը։ Նշանակում է, հայերից բացի XVI դարում Սասունի քրդերը ևս ծանոթ են եղել Դավթի մասին ավանդական զրույցներին, որոնց իսկությունը հիմնավորված է եղել անգամ առարկայական ապացույցներով։ Եվ այս պարագայում է, որ բնավ ստույգ պատմական իմաստով չպետք է հասկանալ Շարաֆ խանի այն վարկածը, թե Բիթլիսի և Հազոյի կառավարիչն էր ոմն Դավիթ՝ Վրաստանի փոխարքաներից, որոնցից ոմանք ցեղը գրավել է Բիթլիսի վիլայեթն ու Հազոն, կամ եղբայրները՝ Սասուն բերդը։

Պատմության մեջ Սասունի Դավիթ անունով տերերից հայտնի է միայն Դավիթ Բագրատունին, այն էլ՝ IX դարում, երբ Սասունում և հարակից գավառներում քրդեր առհասարակ չկային։ Իսկ Դավթի վրացի լինելը կամ Սասունը վրացիներին երբևէ պատկանելու մասին հաղորդումը պատմական առումով թյուրիմացություն է, որովհետև վրացիները երբևիցե չեն իշխել Սասունին։

Սա նշանակում է, որ Շարաֆ խանը իր հիշյալ վարկածներն առաջ բերելով՝ նկատի է ունեցել Սասունի քրդերի միջավայրում ընտանի դարձած վիպական Դավթի մասին այն ավանդական զրույցները, որ տեսանք պորտուգալացի ճանապարհորդների վկայություններում։ Իսկ թե ինչու է քրդական ավանդության մեջ Դավիթը վրացի կամ վրաց փոխարքա դարձել, ապա դա կարող է

---

նը, որ առկա է երկու հեղինակի մոտ էլ, պետք է ենթադրել, գալիս է մեկ աղբյուրից։ Մեզ թվում է, թե դա պարզ շփոթումն է Սանսուն (Սասուն) տեղանվան, պարզ հնչյունանմանության պատճառով։ Եթե Սանսոնը օտարերկրյա ճանապարհորդների Սասուն տեղանվան աղավաղումը չէ, ապա պետք է ենթադրել, որ XVI դարում տեղացիների մեջ Սասունը կոչվել է Սանասունք հին անվամբ, կամ ժողովրդական Սան+սուն (=սյունը սյան վրա) ստուգաբանությամբ, որ առկա է վեպի մի շարք պատումներում։ Համենայն դեպս Սամսոն և Դավիթ անունները անհարիր են միմյանց և ցարդ ոչ մի գրավոր ու բանավոր աղբյուրով չվկայված։ Պարզապես Սասունի (Սանսոնի) տերը իր առասպելական ուժի պատճառով պորտուգալացիների մտքում զուգորդվել է բիբլիական Սամսոնին և նրանց նոթերում այդպես էլ կոչվել։

պատմական հիշողություն լինել այն իրողության, որ, ինչպես Կիրակոս Գանձակեցին է վկայում, երբ XIII դարի կեսերին թաթարները գրավում են Հայաստանը, Սասունը հանձնում են հայազգի Սադուն իշխանին։ Սադունը ծոռն էր Քուրթ մականունով նշանավոր հայազգի իշխանի («Սա է հայր Սադունին և Դավթի, պապ Շէր-Բարոբին, հօրն Սադունին»), որը կալվածներ և մեծ հարգանք ու արտոնություններ ուներ Վրաստանում։ Ըստ Գանձակեցու, այս Քուրթ իշխանի բրոջ զավակներն էին վրաց ամիրսպասալարներ Զաքարեն ու Իվանեն[27]։ Այդ վերջին Սադունին, որ սկզբում ծառայել է վրաց զորքերում, ապա թաթարների գալով շատ հայ իշխանների նման մտնում է թաթարների զորքի մեջ, որին և հանձնվում է Սասունի իշխանությունը։ Աբեղյանի ենթադրությամբ Քուրթ իշխանը (ինչպես նրա մականունն է վկայում) հավանաբար սերել է Արևմտյան Հայաստանից և մասնավորապես Սասունի իշխանական տոհմից, որի սերունդ Սադունը «դարձյալ տեր է դառնում Սասունին»։ «Ինչպես էլ լինի,—գրում է Աբեղյանը,—պետք է ընդունել, որ Սասունի իշխանները վրաց տիրապետության ժամանակ այդպիսի մի դեր կատարել են, քանի որ մեր վեպի մեջ Դավիթը գնում է Գյուրջիստան տիրում. Մհերն իշխում է Գյուրջիստանում և այնտեղից գալիս է Սասուն և կռվում Կողբադնի կամ Մսրա Մելիքի թոռների դեմ և մինչև իսկ Հալեբ ու Բաղդադ գնում,— որ անշուշտ հիշողություն է հայ իշխանների և Սասունի Սադուն իշխանի ծառայելուն թաթարների բանակի մեջ Բաղդադի խալիֆայի և էտլյան հարստության դեմ վարած կռիվների ժամանակ»[28]։

Այս հավանական ենթադրությանը պետք է ավելացնել նաև այն, որ վիպական Դավթի ավանդական գրույցներին հարել է նաև XIII դարի Սասունի իշխան, Վրաստանում սնված ու ծառայած Սադունի, զուգե և նրա հաջորդների պատմական հիշողությունը, և քրդական միջնադարյան ավանդության մեջ վիպական Դավիթը դարձել է վրաց փոխարքա կամ իշխան։

Քանի որ Սասունի և Բիթլիսի քրդերի միջավայրում XVI դարում ծանոթ են եղել Դավթի ավանդական գրույցներին, և անգամ վիպական Դավիթը համարվել է իրական-պատմական անձնավորություն, և խլաթցի երկու եղբայրներ Իզադդինն ու Զիադդինը անմիջական հարաբերության մեջ են դրվել Դավթի հետ (նրանից խլել են Սասուն բերդը), ապա պետք է ենթադրել, որ երկու եղբայրների գրույցը հայկական ավանդությունից քրդերին է փոխանցվել «Սասնա ծռեր» վեպի միջոցով։

Առաջին հայացքից տարօրինակ կարող է թվալ, որ հայ վիպական ավանդության մեջ Սանասարի թոռ կամ որդի հանդես եկող Դավիթը քրդականում դարձել է երկու եղբայրներին հակառակորդ և նրանցից առաջ դրվել։

Վիպական ավանդության մեջ հոր և որդու տեղերի և դերերի փոփոխությունը հաճախադեպ է, այդպես և մեր «Սասնա ծռեր» վեպում։ Բայց որ քրդական ավանդության մեջ Դավիթը հակառակորդ ու այլազգի է դուրս եկել հայկականում իր պապ կամ հայր հանդես եկող երկվորյակ եղբայրներին, ապա դա կատարվել է այն պարզ պատճառով, որ երկու եղբայրների գրույցը քր-

27 Տե՛ս Կիրակոս Գանձակեցի, Պատմություն հայոց. աշխատասիրությամբ Կ. Ա. Մելիք-Օհանջանյանի, Երևան, 1961, էջ 208—209, 386, նաև՝ Մ. Աբեղյան, նշվ. աշխ., էջ 370։

28 Մ. Աբեղյան, նշվ. աշխ., էջ 370—371։

դականում, կապվելով բուրդ վերնախավի Բիթլիսի և Սասունի տիրակալական միտումներին, ազգայնացել, դարձել է Սասունի և Բիթլիսի նոր տերերի տոհմաբանությունը հնացնող և նրանց տիրապետությունը պատճառաբանող իրականություն։ Սասունի հին կամ բնիկ տերերի ծագման ավանդությունն իրենց վրա են առել նրա նոր տերերը, հարկավ, համապատասխան վերախմբագրումով ու փոփոխություններով։ Իսկ նման դեպքում Սասունի բուն տեր վիպական Դավիթը, որի վեպն իր տարբեր դրվագներով լայնորեն տարածված էր տեղի հայ և քուրդ ազգաբնակչության մեջ և անգամ հիմնավորված առարկայական ապացույցներով, բնականաբար պետք է հակադրվեր երկրի նոր տերերին և դառնար նրանց հակառակորդ։ Քրդական ավանդությամբ եղբայրների «Հայաստանի մայրաքաղաք» Խլաթից սերած ու Խլաթի տերեր լինելն էլ նպաստում է հիշյալ տեսակետի հիմնավորմանը, քանի որ, ինչպես տեսանք պորտուգալացի ճանապարհորդների վկայությունից, Դավիթը ըստ տեղական ավանդության՝ ծնվել է Խլաթում, և XVI դարում նրա անվան հետ է կապված եղել Խլաթի ամրոցի և հարակից գմբեթավոր շենքերի կառուցումը։ Եթե հավաստի է պորտուգալացի ճանապարհորդների այս վկայությունը (որովհետև վեպի XIX—XX դդ. գրառված պատումներում բացակայում է Դավթի՝ Խլաթում ծնվելու մասին որևէ հիշատակություն[29]), ուստի պետք է ենթադրել, որ XVI դարում եղել է վեպի մի պատում կամ ավանդություն, ըստ որի Դավթի պապերը (երկվորյակ եղբայրները) եղել են Խլաթում։ Այդ մասին ուղղակի վկայություն կա «Սասնա ծռերի» պատումներից մեկում։ Եղբայրները (Սանասար և Ասլիմելիք), հալածվելով հայրենի երկրից, գալիս են Խլաթ և ապավինում Մելքոն թագավորին։ Նրանք ծառայության են մտնում Խլաթի թագավորի մոտ, որից այնուհետև ստանում են իրավունք, օժանդակություն և բնակիչներ՝ Սասունը շինելու և բնակեցնելու համար։ Խլաթի Մելքոն թագավորը խլաթցի մի աղջկա պսակում է Սանասարի հետ և նրա ու եղբոր կառուցած բերդի անունը դնում Սասուն[30]։ Վեպում պահպանված այս իրողությունը ըստ ամենայնի ձայնակցում է խլաթցի եղբայրների մասին քրդական միջնադարյան ավանդությանը և որոշ չափով պատճառաբանում Իզադդինի և Ջիադդինի Խլաթից գալն ու Սասունին տիրելը[31]։

---

29 Միայն մի առիթով Գ. Հովսեփյանը իր գրառած մի պատումի տողատակին հիշատակում է, որ իր ձեռքի տակ եղած վեպի մեկ այլ տարբերակով (որը նա, ցավոք, չի հրատարակել և ցարդ հայտնի չէ), Մսրա Մելիքը գալիս է Ղզրաղնու վրեժն առնելու և հարկը տանելու ոչ թե Սասունից, այլ Խլաթից, ուր գտնվում են Դավիթն ու իր բեռի Ձենով Հովանը (տե՛ս «Սասնա ծռեր», հատ. Բ. II մաս, Երևան, 1951, էջ 77)։ «Սասնա ծռերի» մի շարք պատումներով Դավթի որդի Մհերը կամ Դավիթը հոր վրեժը լուծելու համար ավերում է Խլաթը (տե՛ս «Սասնա ծռեր», հատ. Ա, Երևան, 1936, էջ 1082—1083, հատ. Բ, I մաս, Երևան, 1944, էջ 93, 125—126, 246, հատ. Բ, II մաս, էջ 302—303, 523—524)։ Մեր վեպի պատումներով, ուրեմն, Խլաթն ավերողը ոչ թե Դավիթն է, ինչպես պորտուգալացիների վկայություններում, այլ նրա որդին (որդու հետ՝ երբեմն Դավթի եղբայրները)։ Կամ պորտուգալացիներն են հոր և որդուն շփոթել միմյանց, որ միանգամայն հնարավոր է, կամ պետք է ընդունել, որ XVI դ. Խլաթի ավերումը կապելիս են եղել Դավթի անվան հետ։

30 «Սասնա ծռեր», հատ. Բ, I մաս, էջ 52—56։

31 Այստեղ թերևս ավելորդ չէ հիշատակել մեկ հանգամանք։ Քրդական ավանդության մեջ չի նշվում եղբայրների երկվորյակ լինելը, ընդհակառակը, Շարաֆ խանը մի տեղ անգամ ասում է, որ նրանք հորեղբորորդիներ են (տե՛ս («Шараф-Наме», էջ 247)։ Այսուհանդերձ եղբայր-

Բերած բոլոր փաստերից ու փաստարկներից, կարծում ենք, կարելի է հանգել հետևյալ եզրակացության. հայ հին ու միջնադարյան ժողովրդական ավանդության մեջ մի քանի տարբերակներով հայտնի իշխանական տների հիմնադիր երկու եղբայրների զրույցը, որ պատմվել է Սասունի և Տարոնի հայ իշխողների մասին, ուշ միջնադարում փոխանցվել է Հայաստանի, մասնավորապես Սասունի և Տարոնի նոր տիրակալներին՝ քրդերին։ Քրդական ավանդությունը հիմնականում պահպանել է հայկական զրույցների սյուժետային գծերը, ապա, որ ամենակարևորն է, պատմվել է Հայաստանի նույն տեղավայրերի տիրողների մասին, ինչ հայկական ավանդության մեջ։ Հայկական զրույցը ուշ միջնադարում քրդերին է փոխանցվել «Սասնա ծռեր» վեպի միջոցով[32], որն այդ ժամանակ, ըստ պատմական վկայությունների, խիստ տարածված էր հայերով և քրդերով խառը բնակեցված Սասունում և Խլաթում։ Այս վերջին եզրակացության օգտին է վկայում նաև այն իրողությունը, որ հայ ժողովրդական վեպը XIX—XX դդ. հայտնի էր և լայնորեն տարածված Սասունի, Մոկսի, Շատախի, Տարոնի և Ալաշկերտի քուրդ ազգաբնակչության մեջ. 1930-ական թթ. և անգամ մեր օրերում Արևելյան Հայաստան գաղթած քրդերի սերունդներից գրանցվել են «Սասնա ծռեր» վեպի քրդերեն պատումներ[33]։

Ճիշտ նույն կերպ իրանական «Ռուստամ Զալ» վեպը հայկական վիպական ավանդության մեջ է փոխանցվել Արևմտյան Հայաստանում բնակվող հարևան քրդերից։ Բացի հայերեն վիպվող «Ռուստամ Զալի» տարբեր պատումների բազմաթիվ գրառումներից, մինչև օրս էլ կենդանի են հայ վիպասացներ, որոնք «Ռուստամ Զալը» վիպում են քրդերեն, «Շահ-Նամեի» վեհ ու հանդիսավոր չափով։

Այս երկու կարգի փաստերն արդյունք ու արտահայտություն են երկու հարևան և բարեկամ ժողովուրդների դարավոր համակեցության ու փոխադարձ մտավոր շփումների, որ իր արձագանքն է գտել նրանց հոգևոր մշակույթի մեջ։

---

ների բրդական ավանդությունն ունի սրբազան երկվորյակների մասին տարածված զրույցների գծեր։ Այսպես, ըստ միջազգային զրույցների՝ երկվորյակներից մեկը բարի է, մյուսը՝ չար, մեկը միշտ ֆիզիկապես ուժեղ է մյուսից, մեկը միշտ փոքր-ինչ հիմարավուն է, մյուսը՝ խելոք, երկվորյակների միջև միշտ առկա է որևէ հակամարտություն և անգամ՝ պայքար (տե՛ս Л. Я. Штернберг, Античный культ близнецов при свете этнографии, Петроград, 1916)։ Երկվորյակների մասին միջազգային զրույցներին բնորոշ այս գծերը նույնությամբ դրսևորված ենք գտնում «Սասնա ծռեր» վեպում, Սանասարի և Բաղդասարի փոխհարաբերություններում, որովհետև, ինչպես նշել ենք, Սանասարի և եղբոր պատմական ավանդությանը հարակցվել են սրբազան երկվորյակների միջազգային առասպելն ու հավատալիքները։ Նույնը գրեթե առկա է նաև եղբայրների բրդական զրույցում. Ջիադդինն ավելի խելոք է, խորամանկ, հավանաբար և ուժեղ, քան Իզադդինը, նրանց միջև ծագում է հակամարտություն, և Ջիադդինը եղբորից հափշտակում է Բիթլիսը, Սասունը թողնելով նրան։ Սա ապացույց է եղբայրների երկվորյակ լինելուն, որ թեպետ չի վկայված, բայց փաստորեն առկա է։ Այս կողմից ևս բրդական զրույցը խիստ մերձենում է Սանասարի և Բաղդասարի վիպական ճյուղին։

32 Կարևոր է նշել, որ Շարաֆ խանը Դավթի անունն իր երկում բերում է արևմտահայերեն արտասանությամբ՝ Թավիթ։

33 Պատումներից մեկը գրանցել է բրդագետ Հ. Ջնդին 1930-ական թթ. վերջերին և հրատարակել (տե՛ս А. Джнди, Курдский фольклор, Ереван, 1957, էջ 157—160)։ Մյուսը գրանցել է բանասեր, գիտ. դոկտոր Ս. Հարությունյանի ղեկավարած արշավախումբը Ապարանից, 1973 թ.։

## ОТГОЛОСКИ ЭПОСА «САСНА ЦРЕР» В «ШАРАФ-НАМЕ»

Доктор филол. наук С. Б. АРУТЮНЯН, доктор историч. наук Р. М. БАРТИКЯН

(Резюме)

В древней и средневековой армянской эпической традиции, по сообщению армянских историков, в нескольких вариантах распространено сказание о двух братьях — князьях или царевичах, которые происходят из родов чужеземных вельмож, приезжают в Армению и основывают в Тароне и Сасуне новые княжеские роды. Этот тип предания и составляет основную сюжетную линию первой ветви эпоса «Сасна црер».

Однотипное сказание сохранилось и в книге «Шараф-наме» курдского историка XVI в. Шараф-хана Бидлиси. По его сообщению, курдские правители Битлиса и Сасуна происходят от двух братьев — Иззаддина и Зийаддина, родом из Сасанидской династии.

Курдская эпическая традиция совпадает с армянской не только *типологически*, но и *географически* и рассказывает о правителях тех же этно-географических районов, что и в армянских сказаниях.

По историческим данным, армянский эпос «Сасна црер» в XVI в. был распространен в Сасуне и Хлате, населенных армянами и курдами: Шараф-хан Бидлиси свидетельствует, что братья Иззаддин и Зийаддин отобрали Сасун у его правителя Давида. В статье делается вывод, что данное сказание переходило в курдскую эпическую традицию через армянский эпос «Сасна црер», распространенный и среди курдов.